ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

210



№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՆՈՐ ՏԱՐԻՆ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին նոր տարին մեծ հաջողություններով է դիմավորում նաև հայ ժողովուրդը։ Այդ հաջողությունները արտացոլվում են սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, արվեստի և մյուս բնագավառներում։

Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառի աշխատողները լուրջ հաջողությունների հասան արդյունաբերության զարգացման գործում։ Ծավալելով սոցիալիստական մրցությունը և գործի վերածելով իրենց ստանձնած պարտավորությունները, նրանք ժամկետից շուտ, անցած տարվա դեկտեմբերի 20-ին, կատարեցին 1956 թվականի համախառն արտադրանքի արտադրության պետական պլանը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռ-





նարկությունները անցած տարում յուրացրին արտադրանքի ավելի քան 100 նոր տեսակներ։ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, նշանակալից չափով աճել է արտադրության շատ տեսակների արտադրությունը։ Այսպես, օրինակ, 1956 թվականին թողարկվել են 33 տոկոսով ավելի ավտոդողեր, 41 տոկոսով ավելի տրանսֆորմատորներ, 2,8 անգամ ավելի էլեկտրական չափիչ գործիքներ, 29 տոկոսով ավելի էլեկտրալամպեր, 40 տոկոսով ավելի զարթեցուցիչ ժամացույցներ, 27 տոկոսով ավելի ավտոմոբիլային պահեստամասեր, 25 տոկոսով ավելի բրդե գործվածքներ, 16 տոկոսով ավելի կահույք, 25 տոկոսով ավելի խաղողի գինի, 34 տոկոսով ավելի պահածո, 19 տոկոսով ավելի կաթնամթերք և այլն։

Իրենց ձեռք բերած լավ արդյունքներով ռեսպուբլիկայի առաջավոր արտադրական օբյեկտների թվին են պատկանում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան, Ավտոդողերի, Հայէլեկտրո, Էլեկտրական ճշգրիտ գործիքների, «ԿԱՆԱԶ», Ալավերդու պղնձաձուլական գործարանները, Կիրովականի տրիկոտաժի, Լենինականի մանվածքային և Երևանի ծխախոտի ֆաբրիկաներն ու բազմաթիվ այլ արտադրական ձեռնարկությունները։ Փորձարկ-



վեց և արդյունաբերական առաջին հոսանքը տվեց Արզնու հիդրոէլեկտրակայանը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական բնագավառի աշխատողները խոստացել են մինչև տարվա վերջը լրացուցիչ կերպով երկրին տալ ավելի քան 230 միլիոն ռուբլու արտադրանք։ Հարյուրավոր առաջավոր բանվորներ կատարելով իրենց պարտքը սոցիալիստական Հայրենիքի հանդեպ, ոչ միայն գերակատարեցին իրենց արտադրական պլանները, այլև սկսել են աշխատել 1957 և անգամ 1958 թվականների հաշվին։

1956 թվականի տնտեսական տարում արտադրական խոշոր հաջողություններ ձեռք բերեցին Ղափանի պղնձագործները։ Ֆլոտացիոն ֆաբրիկայի կոլեկտիվը ժամկետից շուտ կատարելով իր տարեկան արտադրական առաջադրանքները, պլանից ավելի վերամշակել է 7000 տոննա հանքաքար։ Գերակատարված են հանքաքարից պղնձի կորզման, կոնցենտրատի մեջ մետաղի պարունակության պլանը։ № 7—10 հանքահորի Ն. Գրիգորյանի ղեկավարած հորատողների հերթափոխությունը պլանից դուրս օրական տվել է 15—20 տոննա լավորակ հանքաքար։ Անցած տարվա միայն 11 ամսվա ընթացքում հերթափոխի անդամները կատարել են

21 ամսվա արտադրական առաջադրանք և ներկայումս աշխատում են 1957 թվականի հոկտեմբեր ամսվա հաշվին։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը ծավալելով Երևան—Կիև սոցիալիստական մրցությունը, ժամկետից 10 օր շուտ կատարեց տարեկան պլանը՝ խնայելով 1000 տոննա հումք, 2 միլիոն 200 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 1385 տոննա վառելանյութ։

ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումների քննարկումը չտեսնված խանդավառություն է առաջ բերել Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանում։ Ագիտատորները ցեխերում, բրիգադաներում, հերթափոխություններում բանվորների համար կարդում, բացատրում և զրույցներ են անցկացնում Դեկտեմբերյան պլենումի որոշումների մասին, գործարանի ձեռք բերած հաջողությունների մասին։ 1956 թվականի տարեկան պլանը գործարանը կատարեց ժամկետից շուտ և հրաժարվեց պետության կողմից ստացվող 14 միլիոն ռուբլու դոտացիայից, երկրին տվեց 2,5 միլիոն ռուբլու օգուտ։ Միայն ինքնարժեքի իջեցումից գործարանն ունեցավ 600 հազար ռուբլու խնայողություն։ Նոր տեխնիկայի և աշխատանքի



առաջավոր մեթոդների արմատավորման, եղած կարողությունների մաքսիմալ օգտագործման հիման վրա գործարանը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, արտադրանքի թողարկումը ավելացնելու է 20 տոկոսով։

Անցած տարի խոշոր հաջողություններ ձեռք բերեցին գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։ Մեր անծայրածիր Հայրենիքի շատ երկրամասեր, մարզեր ու ազգային ռեսպուբլիկաներ հացամթերումները, բամբակի հումքի և գյուղատնտեսական այլ մթերումները ժամկետից շուտ ու լավ ցուցանիշներով կատարելու համար արժանացան կառավարական պարգևների, պարտիայի և կառավարության բարձր գնահատականին։

Նշանակալից հաջողություններ ձեռք բերեցին նաև մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները։ Կենսագործելով պարտիայի XX համագումարի որոշումները, մոբիլիզացնելով իրենց ամբողջ ուժերն ու ներքին հնարավորությունները, նրանք 1956 թվականի դեկտեմբերի 20-ին հաջողությամբ կատարեցին իրենց պետական պարտավորությունները. մսինը՝ 103,7 տոկոսով, կաթինը՝ 100,8 տոկոսով, բրդինը՝ 103,5 տոկո-

սով, հացահատիկինը՝ 109 տոկոսով, բանջարեղենինը՝ 105,3 տոկոսով, խաղողինը՝ 141 տոկոսով և այլն։

Կովերի կաթնատվության բարձրացման ուղղությամբ անցած տարի առանձնապես բարձր ցուցանիշներ ձեռք բերեցին Շահումյանի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Սևանի, Մեղրու և մի շարք այլ շրջաններ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ոչխարաբուծության բնագավառում աշխատողները կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները լավ արդյունքների հասան ոչխարների բրդատվության ավելացման գործում, որի համար միութենական կառավարության կողմից պարգևատրվեցին 109 հազար 700 ռուբլու գումարի չափով։

Զգալի թվով առաջավոր կթվորներ ու հովիվներ արժանացել են ռեսպուբլիկայի «լավագույն կթվոր» և «լավագույն հովիվ» բարձր կոչման և գրանցվել են Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ու ՀԿՊ Կենտկոմի կողմից սահմանված ռեսպուբլիկական պատվո գրքում՝ լավագույն արդյունքների համար։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1956 թվականին ստացել են տասնյակ միլիոն ռուբլի ավելի դրամական եկամուտ, քան 1955 թվականին։



Զգալի են մեր նվաճումները կուլտուրայի, արվեստի, գրականության և գիտության զարգացման բնագավառում։ Բավական է ասել, որ անցյալ տարի հայկական արվեստի և գրականության տասնօրյակը Մոսկվայում ըստ էության հանդիսացավ հայ ժողովրդի հոգևոր կուլտուրայի տրիումֆը։ Անցյալ տարի ավարտվեց և շահագործման հանձնըվեց Երևանի հեռուստատեսական կենտրոնը։ Նշանակալից են հաջողությունները նաև ժողովրդական կրթության, առողջապահության, սովետական առևտրի ընդլայնման ուղղությամբ։

1956 թվականը մեր պատմության մեջ կմտնի որպես մեր պարտիայի և կառավարության կողմից աշխատավոր մասսաների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ կատարված խոշոր ձեռնարկումների տարի։ Ավելացվեցին աշխատավորների կենսաթոշակների չափերը, կրճատվեցին նախատոնական և նախահանգստյան օրերի աշխատանքային ժամերը, բարձրացվեցին գյուղատնտեսական մթերքների մթերման ու ազատ գնումների գները, վերացվեց ուսման վարձը միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում, ավելացվեց կանանց հղիու-

*թյան և ծննդաբերության արձակուրդների տևողությունը։*

*Նոր, պայծառ հեռանկարներ են բացվում սովետական ժողովրդի համար 1957 թվականին։ Ամրապնդելով անցած տարվա իր նվաճումները, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անշեղորեն կկենսագործի XX համագումարի և Դեկտեմբերյան պլենումի որոշումները և նոր հոյակապ նվաճումներ ձեռք կբերի 1957 թվականի ընթացքում։*

---

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ 6-ՐԴ ՖԵՍՏԻՎԱԼԸ

## Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Անճանաչելի էր Պրագան 1947 թվականի օգոստոսին։ Չեխոսլովակիայի գեղեցկատես մայրաքաղաքը դարձել էր երգի, պարի, ուժի ու գեղեցկության մի սքանչելի հրապարակ։ Աշխարհի բոլոր ծայրամասերից այստեղ էին հավաքվել ավելի քան 17 հազար պատանիներ ու աղջիկներ։ Միանգամայն տարբեր համոզմունքների ու հայացքների տեր հազարավոր երիտասարդներ, որոնք այստեղ էին ժամանել 73 երկրներից, խանդավառությամբ անցկացրին երիտասարդության համաշխարհային առաջին փեստիվալը։*

*Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիայի այդ հիանալի միջոցառումը հսկայական ժողովրդայնություն ստացավ։ Միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ միավորող այդ ֆեդերացիայի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ հետագա տարիներին՝ 1949, 1951, 1953, 1955*

թվականներին երիտասարդական ֆեստիվալներ կայացան Եվրոպայի տարբեր քաղաքներում՝ Բուդապեշտում ու Բեռլինում, Բուխարեստում ու Վարշավայում։ Իսկ նրանց մասնակցող երկրների ու երիտասարդների թիվը գնալով աճեց։ Միայն Վարշավայի ֆեստիվալին մասնակցողների թիվը հասավ 30 հազարի։ Նրանք ներկայացնում էին աշխարհի 114 երկրների երիտասարդությանը։

Ֆեստիվալների ընթացքում իրար են հանդիպում նեգրերն ու ռուսները, հնդիկներն ու արաբները, անգլիացիներն ու յապոնացիները և շատ ու շատ այլ երկրների երիտասարդներ։ Նրանք խոսում են տարբեր լեզուներով, ունեն կրոնական տարբեր հայացքներ, հարում են տարբեր պարտիաների, բայց նրանց բոլորին էլ միավորում է միևնույն նպատակը՝ խաղաղության պահպանման նպատակը։

Այժմ դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիայի որոշմամբ այս տարի Մոսկվայում կկայանա աշխարհի դեմոկրատական երիտասարդության 6-րդ ֆեստիվալը։ Մի քանի ամիս շարունակ աշխարհի բոլոր անկյուններում երիտասարդությունը պատրաստվում է Մոսկվա մեկնե-



լու, որպեսզի այնտեղ ցուցադրի իր բոլոր ուժերն ու ունակությունները։

Այդ ֆեստիվալին են նախապատրաստվում Մեծ Բրիտանիայում ու Ցեյլոնում, Կանադայում ու Շվեյցարիայում, Մեքսիկայում ու Եգիպտոսում և աշխարհի բազմաթիվ այլ երկրներում։

Երիտասարդության և ուսանողության 6-րդ համաշխարհային ֆեստիվալի նախապատրաստության բուռն օրեր են ապրում մեր երկրի պատանիներն ու աղջիկները։ Բոլոր գյուղերում ու քաղաքներում, շրջաններում, մարզերում ու ռեսպուբլիկաներում երիտասարդությունն իր նվերներն է պատրաստում։ Արդեն որոշված է, որ ֆեստիվալի ՍՍՌՄ-ի պաշտոնական պատվիրակությունը բաղկացած կլինի երեք հազար մարդուց։ Նրա մեջ կմտնեն լավագույն երգողներն ու պարողները, ամենաշնորհալի ստեղծագործողները, ամենահմուտ սպորտսմենները, աշխատանքի և ուսման ամենաառաջավոր պատանիներն ու աղջիկները։ Համաշխարհային ֆեստիվալին նախորդող ժամանակաշրջանում նախատեսված է անցկացնել սովետական երիտասարդության համամիութենական առաջին ֆեստիվալը։ Այդ ֆեստիվալը սկսվել է 1956 թվականի սեպտեմբերին և կտևի մինչև

1957 թվականի մայիսը՝ երեք տուրով։ Ֆեստիվալի առաջին տուրը տեղի է ունենում ձեռնարկություններում ու ՄՏ կայաններում, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում, հիմնարկներում ու ուսումնական հաստատություններում, բանակում ու նավատորմում։ Երկրորդ տուրը կկայանա շրջանների և քաղաքների մասշտաբով, իսկ երրորդ տուրը՝ մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների մասշտաբով։ Ֆեստիվալի եզրափակիչ տուրին, որը կկայանա Մոսկվայում, 1957 թվականի մայիսին, կմասնակցեն նախորդ տուրերում առավել աչքի ընկած երիտասարդները։

Մեր երկրում ֆեստիվալի նախապատրաստությունն ընթանում է պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրների կենսագործման, ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կատարման նշանաբանով, կուլտուր-լուսավորական աշխատանքները լայնորեն ծավալելու, ավելի շատ նախաձեռնություն, ստեղծագործական ակտիվություն ցուցաբերելու նշանաբանով։ Բոլոր ռեսպուբլիկաներում ու մարզերում, քաղաքներում ու գյուղերում ստեղծվում են գեղարվեստական ինքնագործունեության բազմաթիվ ու բազմապիսի խմբեր, կազմակերպ-



վում են հետաքրքրաշարժ միջոցառումներ։ Օրինակ, ֆեստիվալի նախապատրաստության ընթացքում Բելգորոդի մարզում ստեղծվել են երգի-պարի 160 նոր խմբակներ, Երևանում գործել է սկսել համաքաղաքային երգչախումբը, երիտասարդական ակումբներ են ստեղծվել Միության բազմաթիվ քաղաքներում։ Այդ ակումբները նամակագրական կապ են պահպանում տարբեր երկրների ակումբների ու երիտասարդական կազմակերպությունների հետ։ Ֆեստիվալի նախապատրաստությունը Պրիմորյեի երկրամասում անց է կացվում «Պտղատու այգի՝ յուրաքանչյուր կոլտնտեսությունում» նշանաբանով, իսկ Նովոսիբիրսկի մարզի կոլտնտեսություններում՝ «Կարգի բերենք ակումբները» նշանաբանով։ Մոլդավական ռեսպուբլիկայում երիտասարդության ինքնագործունեության լայն զարգացման հետ միասին ֆեստիվալի օրերին, գյուղական վայրերում կուլտուրական հիմնարկների նոր շենքեր են կառուցվում։

Ֆեստիվալին մեծ եռանդով է նախապատրաստվում նաև մեր ռեսպուբլիկայի ամբողջ երիտասարդությունը։ Շրջանների երիտասարդությունը ֆեստիվալի նախապատրաստության ընթացքում լայն մրցություն է ծա-

վալել քաղաքներն ու գյուղերը, ճանապարհներն ու հուշարձանները կանաչապատելու համար։ Իջևանի և Ստեփանավանի հարյուրավոր երիտասարդներ բահ ու քլունգ առած հազարավոր ծառեր տնկեցին ճանապարհամերձ տարածություններում, Գորիսի բազմաթիվ երիտասարդներ միահամուռ ուժերով նորոգեցին դեպի եղբայրական Ադրբեջան տանող ճանապարհը, որը խիստ տուժել էր հեղեղից։ Ֆեստիվալի նախապատրաստության ընթացքում քաղաքների ու գյուղերի երիտասարդները հանդես են բերում նոր ու արժեքավոր նախաձեռնություններ։ Նրանք հավաքում և պետությանն են հանձնում մետաղի լոմ, շշեր ու բանկաներ, կառուցում, նորոգում են կուլտուրական հիմնարկները, օգնում են հաշմանդամներին ու ծերերին։

Առավել լայն ծավալ է ստանում երիտասարդության ինքնագործունեությունը։ Կիրովականցիների հանդես բերած հիանալի նախաձեռնությունը՝ երգի տոնը, ընդօրինակեցին նոյեմբերյանցիները։ Երևանի ռուսական մանկավարժական ինստիտուտի ինքնագործ խմբակների կողքին հանդես եկան նորերը՝ ավելի կազմակերպված, ավելի համախմբված։ Իրենց աշխատանքներն ավելի են աշխուժացնում բուհերում ու գործա-



րաններում, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում ստեղծված թատերական, երգի ու պարի ինքնագործ խմբերը, հանդես են գալիս նոր ինքնուս քանդակողներ, նկարիչներ, երաժիշտներ։ Ֆեստիվալի նախապատրաստությանը լայն մասնակցություն են ունենում նաև պրոֆեսիոնալ ստեղծագործողները, գրողներն ու երաժիշտները, նկարիչներն ու դերասանները։

Բայց ֆեստիվալի նպատակը միայն երգն ու պարը՝, միայն սպորտային մասսայական միջոցառումներ ձեռնարկելը չէ։ Աշխատանքը, ստեղծագործ աշխատանքն է փառաբանվում ֆեստիվալի ընթացքում։ Կանգնել համամիութենական հերթափոխի, դնել բարձր բերքի հիմքը, հանդես գալ նորարարական խելացի առաջարկություններով, գործի դնել ներքին ռեզերվները։ Ահա այս օրերին որն է ռեսպուբլիկայի հանքագործների ու հաստոցաշինարարների, բամբակագործների ու այգեգործների, ֆաբրիկաների ու արտելների, ՄՏ կայանների ու սովետական տնտեսությունների երիտասարդ բանվորների նշանաբանը։

Ահա միայն մի օրինակ այն մասին, թե աշխատանքային ինչպիսի հիանալի նախաձեռնություններ է հանդես բերում ռեսպուբ-

լիկայի երիտասարդությունը։ Համեստ, դեռես քիչ ճանաչված աղջիկ է Մանյա Մխիթարյանը։ Հայէլեկտրոգործարանի № 9 ցեխում նա մինչև վերջին օրերը հայտնի էր միայն որպես առաջադրանքները գերակատարող բանվորուհի։ Բայց ահա երկու ամիս է, ինչ նրա անունը չի իջնում երիտասարդական թերթերի էջերից։ Մանյա Մխիթարյանը հանդես է եկել հայրենասիրական մի հիանալի նախաձեռնությամբ։ Նա կոչ է արել ռեսպուբլիկայի բոլոր երիտասարդ բանվորներին լայն մրցություն ծավալել ութժամյա բանվորական օրվա նորման յոթ ժամում կատարելու համար։ Այդ կոչը լայն արձագանք է գտել բազմաթիվ գործարաններում ու ֆաբրիկաներում, արտելներում ու ձեռնարկություններում։

Մեծ, արտակարգ իրադարձություն է երիտասարդության համաշխարհային ֆեստիվալի հրավիրումը մեզ մոտ՝ Մոսկվայում։ Այժմ Մոսկվային է բևեռված միլիոնավոր երիտասարդության ուշադրությունը։ Հազարավոր մոսկվացիներ, մեր երկրի շատ ու շատ երիտասարդներ, մեր Հայրենիքի մայրաքաղաքը նախապատրաստում են ընդունելու բոլոր երկրներից եկող երիտասարդ հյուրերին։ Մոսկվա են գալու մոտ 30 հազար երի-



տասարդներ՝ 150 երկրներից, շուրջ 1000 օտարերկրյա թղթակիցներ և 100 կինոօպերատորներ։ Ֆեստիվալի օրերին օդ բաց թողնելու համար մոսկվացիք բազմացնում են 50 հազար աղավնիներ, նախատեսել են մայրաքաղաքի պուրակներում լրացուցիչ ծաղկապատումներ կատարել։

Մոսկվայում կայանալիք ֆեստիվալին մասնակցող այն կատարողներին և ստեղծագործողներին, որոնք կհաղթեն մեծ մրցությունում, կտրվեն ոսկե, արծաթե, բրոնզե մեդալներ ու դիպլոմներ։ Այդ ֆեստիվալի առթիվ ՍՍՌՄ երիտասարդական կազմակերպությունների կոմիտեն նախատեսել է անցկացնել «Երիտասարդության համամիութենական ֆեստիվալ» դրամա-իրային վիճակախաղ՝ 300 միլիոն ռուբլի գումարով։ 1957 թվականի հունվարի 1-ից մինչև ապրիլի 1-ը կտարածվեն դրամա-իրային վիճակախաղի պարտատոմսերը՝ յուրաքանչյուրը 3 ռուբլի արժողությամբ։

Երիտասարդության համաշխարհային 6-րդ ֆեստիվալը կդառնա երկրագնդի երիտասարդների համախմբման ֆեստիվալ, նրանց ինտերնացիոնալ կապերի մի վառ ապացույց։





---

# ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ՀԱԿԱՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՈԳԵՇՆՉՈՂՆԵՐՆ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐԸ

Վ. ԿԻՐՍԱՆՈՎ

Որքան դեպի անցյալն են հեռանում Հունգարիայի հակառևոլյուցիոն խռովության օրերը, այնքան որոշակիորեն է բացահայտվում նրա մեջ միջազգային ռեակցիայի պրովոկացիոն դերը։ Այդ մասին են վկայում բուրժուական մամուլի բազմաթիվ խոստովանությունները, հունգարական իրադարձությունների ականատեսների պատմածները, պետական և հասարակական շատ գործիչների ելույթները։

Այժմ արդեն լիովին պարզ է, որ հոկտեմբերի 20-ից հետո Հունգարիայում բռնկված հակառևոլյուցիոն խռովությունը նախապատրաստվել էր երկար ժամանակ, պլանաչափորեն և խնամքով։ Այդ նախապատրաստական աշխատանքները ղեկավարում էին միջազգային ռեակցիայի և ամենից առաջ ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանների ներկայացուցիչները։



Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների, այդ թվում նաև Հունգարիայի ներքին գործերին ամերիկացիների կոպիտ միջամտությունների մասին են վկայում պետական քարտուղար Ջոն Ֆոստեր Դալլեսի և ԱՄՆ-ի մյուս բարձրաստիճան պաշտոնական ներկայացուցիչների սիստեմատիկ ելույթները, որոնք ուղղված էին այդ պետությունների ժողովուրդներին և պարունակում էին իրենց օրինական իշխանությունը տապալելու ուղղակի կոչեր։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրների այսպես ասած «ազատագրության» վերաբերյալ հրահրիչ կոչերով մեկ անգամ չէ, որ դիմել է ԱՄՆ-ի կոնգրեսը Արևելյան Եվրոպայի ժողովուրդներին։ Բայց գործը միայն դրանում չէ։ Բոլորին հայտնի է, որ 1951 թվականին ԱՄՆ-ում ընդունված փոխադարձ անվտանգության ապահովման մասին օրենքի համաձայն ամեն տարի հատկացվում էր 100 միլիոն դոլար այն բանի համար, որպեսզի զանազան քայքայիչ կազմակերպություններ կարողանային իրենց սև գործը կատարել ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։

Արևմտյան Գերմանիայում և մյուս արևմտա-եվրոպական երկրներում վերջին տասնամյակում հենց այդ միջոցներով էին

կազմավորվում 1944—1945 թվերին Հունգարիայից փախած խորտիական մնացորդների զորամասերը, դիվերսիոն-տեռորիստական ջոկատներն ու խմբերը։ Հունգարական ռեակցիոն էմիգրանտների ռազմական ուսուցմամբ զբաղվում էին նախկին հիտլերյան և խորտիական սպաները, իսկ լրտեսության և քայքայիչ այլ աշխատանք տանելու հետ կապված հատուկ առարկաները դասավանդում էին ԱՄՆ-ի օկուպացիոն զորքերի շտաբի ամերիկյան հետախույզները։ Նույնիսկ պաշտոնական տվյալներով, Արևմտյան Գերմանիայում ընդհանուր առմամբ նախապես վարժեցված, սպառազինված և դիվերսիոն-տեռորիստական խմբերի, ջոկատների և զորամասերի մեջ է մտցված եղել մոտ 11 հազար խորտիական-ֆաշիստական չարդարար։ Հունգարիայի հակառևոլյուցիոն խռովության թեժ պահին այդ բոլոր կազմավորումները փոխադրվեցին Հունգարիա՝ ներքին ռեակցիային օգնություն հասնելու համար։

Հակառևոլյուցիոն խռովության նախօրյակին Նյու-Յորքից Մյունխեն (որը հանդիսանում էր խորտիական-ֆաշիստական բանդաների խոշորագույն կենտրոնը Արևմտյան Գերմանիայում) եկավ հունգարական նախ-



կին պրեմյեր-մինիստր Նադ Ֆերենցը, որը հայտնի է որպես 1947 թվականի ձախողված հակաժողովրդական խռովության կազմակերպիչ։ Նրան ուղեկցում էր այսպես կոչված «ԱՄՆ-ի հունգարացիների ազգային կոմիտեի» ռազմական բաժնի վարիչ, խորտիական կապիտան Տիբոր Էկխարդտը։ Ինչպես այժմ հայտնի է դարձել, Մյունխեն գալով, նրանք ռեակցիոն էմիգրանտական կազմակերպությունների ղեկավարների հետ անմիջապես բանակցություններ սկսեցին, որոնց ժամանակ քննարկվում էին Հունգարիայի տերիտորիա մարդիկ, զենքեր ու պրոպագանդիստական նյութեր տեղափոխելու հարցեր։ Այդ բանակցություններին մասնակցեց նաև ԳՖՌ-ում ամերիկյան զինված ուժերի ներկայացուցիչ մայոր Է. Ջեկսոնը։ Նա հավաստիացրեց, որ հունգարական ռեակցիոներների պահանջած նյութական օգնությունը, այդ թվում նաև ավտոմեքենաները և ինքնաթիռները, ինքը կտրամադրի առաջին իսկ ազդանշանի դեպքում, երբ կգան «վճռական օրերը»։

Հիրավի, այն բանից հետո, երբ հունգարական ռեակցիոն ընդհատակին հաջողվեց խռովություն հրահրել, Արևմուտքից իսկույն ուժեղ օգնություն եկավ։ Արևմտյան Գերմա-

նիայից խորտիական-ֆաշիստական բանդաները փոխադրելու համար Մյունխենի և առանձին հունգարական քաղաքների միջև ընտեղծվեց ավիացիոն կապ, որը առանձնապես ուժեղ էր գործում գիշերները։ Ֆաշիստական դեսանտների, սպառազինության, ռադիոտեխնիկայի և պրոպագանդիստական նյութերի տեղափոխումը անմիջականորեն ղեկավարում էին խորտիական գեներալ Խուգո Շոնին և «Ազատության համար խաչակրաց արշավանքի» ամերիկյան կազմակերպության ներկայացուցիչները։

Ամերիկյան «Նյու-Յորք ուորլդ տելեգրաֆ էնդ Սան» թերթը չի թաքցնում, որ Հունգարիայի ֆաշիստական խռովարարներին առանձնապես ջանասիրաբար էր օգնում Արևմտյան Գերմանիայի ամենամեծ լրտեսական կենտրոնի ղեկավար գեներալ Գելենը։ Այդ պատենտավորված հետախույզը, որը մի ժամանակ ծառայում էր Հիտլերին, ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից հետո անցավ ամերիկացիների մոտ և սկսեց ծառայել իր նոր տիրոջը՝ Ալլեն Դալլեսին։ 1954 թվականին նա հանձնվեց կանցլեր Ադենաուերի անձնական խնամակալությանը։ «Գեներալ Գելենը,— բազմանշանակալի նշում է թերթը,— հաշվետու է լինում անմիջականո-



րեն կանցլերին, իսկ նրա գործունեությունը ֆինանսավորվում է Ադենաուերի տնօրինության տակ եղած ֆոնդերից»։

Հունգարական իրադարձությունների եռուն պահին Ավստրիայի մայրաքաղաք Վիեննան, ականատեսների վկայությամբ, վեր էր ածվել խռովարարների հավաքատեղիի։ Վիեննայի միջով դեպի երկրի արևելյան սահմանն էին ուղղվում զինվորական տարազ հագած և հունգարերեն խոսող մարդկանցով լեցուն ավտոմեքենաներ։

Արևմտյան պետությունների ավիաընկերությունների ռազմական և քաղաքացիական ինքնաթիռները հունգարական հոսպիտալներին դեղորայք, արենահեղուկ և սննդամթերք մատակարարելու անվան տակ Վիեննա էին տանում մեծ քանակությամբ զենք, որը հետո արագ կերպով հասցվում էր խռովարարներին։ Շվեխատ օդանավակայանը, գրում էր վիեննական «Վելտպրես» թերթը, դարձել էր «օդային կամուրջի» բազա, որը Արևմուտքը կապում էր Հունգարիայի հետ։ Միայն մեկ օրվա ընթացքում այդ օդանավակայանն իջան ավելի քան 30 ինքնաթիռ «բռնավորված խռովարարների համար զանազան պարագաներով», դրանց թվում կային նաև 24 երկմոտոռանի անգլիական ռազմական ինք-

նաթիռ, իտալական ռազմաօդային ուժերի 4 ինքնաթիռ և այլն։ Համբուրգի «Դի վելտ» թերթի թղթակիցը Վիեննայից հաղորդում էր, որ ավտոմեքենաներից մեկում, որը Արևմտյան Գերմանիայից դեղորայք էր հասցնում հունգարական հոսպիտալներին, հայտնաբերվեց 200 տուփ ձեռքի նռնակ։

Եվ բոլորովին էլ պատահական չէր, որ Հունգարիայի Ռևոլյուցիոն Բանվորա-Գյուղացիական կառավարությունը սկսած նոյեմբերի 4-ից ժամանակավորապես դադարեցրեց արևմտյան պետություններից Կարմիր խաչի գծով ստացվող ծանրոցների ընդունումը։ Նա ստիպված էր այդ անելու, ասված է պաշտոնական հաղորդագրության մեջ, քանի որ Արևմուտքից եկած մեկ անգամ 30 ինքնաթիռում և մի ուրիշ անգամ էլ 60 ինքնաթիռում դեղորայքի հետ միասին հայտնաբերվել են նաև զենքեր՝ նռնակներ, ատրճանակներ, ավտոմատներ, ձեռքի գրնդացիրներ։ Ընդսմին այդ ծանրոցներն ուղեկցող անձանց մի մասը, պարզվեց, որ խորտիստներ, հիտլերականներ և հունգարական բանվորների ու գյուղացիների այլ չարանենգ թշնամիներ էին։

Ուշագրավ է նաև այն, որ հակառևոլյուցիայի ուժերն ամրապնդելու համար Հուն-



գարիա էին ուղարկվում ոչ քիչ թվով այնպիսի խորտիական-ֆաշիստական ջարդարարներ, որոնք երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իրենց արյունոտ «փորձը» հարստացրել էին գաղութներում, գտնվելով իմպերիալիստների վարձու բանակներում։ Փարիզի «Պարիզյեն լիբերե» թերթի թղթակից Կանյոնը գրում էր, որ հունգարական խռովարարներին օգնելու համար Ֆրանսիայից ուղարկվեց ավելի քան 300 հունգարացի, որոնք օտարերկրյա լեգիոնի կազմում Հնդկաչինում մասնակցել էին վյետնամցիների դեմ մղվող պատերազմին։

Այսպես, «ազատության և դեմոկրատիայի պաշտպանների» կեղծ անվան տակ Հունգարիա նետվեցին սև ռեակցիայի հազարավոր ներկայացուցիչներ՝ ռազմական հանցագործներ և մոլի ֆաշիստներ։ Նրանց հետ միասին երկիր էին փութում նախկին կալվածատերեր, ֆաբրիկանտներ, խորտիական կառավարչական բարձր պաշտոնյաներ, որոնք Արևմուտք էին փախել Հունգարիայում ժողովրդա-դեմոկրատական կարգ հաստատվելուց հետո։ Մյունխենի, Փարիզի, Նյու-Յորքի, Լիսսաբոնի խավարչտին գետնատներից լույս աշխարհ դուրս եկան հունգարական ռեակցիայի այնպիսի կատաղի գայլեր, ինչ-

պես էրցհերցոգ Օտտո Հաբսբուրգը, կոմս Զիչին, գեներալ-գնդապետ Էմիլ Ցուստին և ինքը՝ ծովակալ Խորտին։ Հունգարական հակառևոլյուցիոն խռովարարների բարեկամների մեջ էին նաև ավստրիական և այլ արևմտաեվրոպական ռեակցիոն շրջանների ներկայացուցիչներ, որոնք Բուդապեշտ և հունգարական այլ քաղաքներ էին մեկնում որպես «խորհրդատուներ» և «դիտորդներ»։ Հակառեվոլյուցիոն խռովության թունդ ժամանակաշրջանում Հունգարիա շտապեցին բուրժուական մամուլի ավելի քան 600 թղթակիցներ, որոնց մեջ կային ոչ քիչ թվով հետախուզությունների փորձված գործակալներ, որոնք եկել էին արևմտյան երկրներից՝ խորտիական-ֆաշիստական բանդաների հետ անմիջական կապ հաստատելու նպատակով։

Արևմուտքի ռեակցիոն շրջանները հակառևոլյուցիոն խռովարարներին ցույց էին տալիս նաև ուղղակի ֆինանսական օգնություն։ Այդ նպատակով արևմտյան երկրներում շտապ կերպով ստեղծվեցին ամեն ձևի ու տեսակի հանձնաժողովներ և կոմիտեներ, որոնք սկսեցին հանգանակություններ անել «հունգարական մարտիկների օգտին»։ Ո՞վ էր օգնության ձեռք մեկնում հակառևոլյուցիային, որը ամբողջ Հունգարիայում ծավալել էր սպիտակ տեռորը։ ԱՄՆ-ում, օրինակ, «հունգարական ապստամբների» հանգանակության կոմիտեի գլուխ էր կանգնել Հերման Ստեյնկրաուսը՝ Ամերիկյան լեգիոնի նախկին պարագլուխը։ Իսկ հայտնի է, որ Ամերիկյան լեգիոնը խայտառակ փառքի է արժանացել ԱՄՆ-ի պրոգրեսիվ ուժերի դեմ պրովոկացիաների կազմակերպումով և նեգրական արյունոտ ջարդերով։ Անգլիայում հունգարական ռեակցիոներների համար միջոցների հավաքման նախաձեռնողներին միացավ Ուինստոն Չերչիլը, որը «ազատության և դեմոկրատիայի հաղթության» համար իր գրպանից վճարեց հազար ֆունտ ստերլինգ։ Ավստրիայում ստեղծված հունգարական հակառևոլյուցիոն խռովարարներին օգնության միջոցների հավաքման կոմիտեն ղեկավարում էին արդյունաբերողների միավորման ներկայացուցիչ Լաուդը և խոշոր տնտեսավարների պարտիայի (ԱՆՊ) գլխավոր քարտուղար Մալետան։

Հունգարական իրադարձություններում մեծ դեր խաղաց սանձարձակ հրահրիչ այն պրոպագանդան, որը մի շարք տարիների ընթացքում տանում էին Արևմուտքի ռեակցիոն շրջանները հունգարական ժողովրդական ռեսպուբլիկայի դեմ։ Այդ գործում ա-

ռանձնապես նողկալի դեր էր կատարում և
մինչև այժմ էլ շարունակում է կատարել
ամերիկյան «Ազատ Եվրոպա» ռադիոկայա-
նը, որը գործում է Արևմտյան Գերմանիա-
յում։ Ահա թե ինչ էր գրում, օրինակ, խռո-
վության օրերին Բուդապեշտում գտնվող
ֆրանսիական բուրժուական «Ֆրանս սուար»
թերթի թղթակից Գորդեն. «Մենք շատ սուտ
հաղորդագրություններ էինք լսում այն մա-
սին, ինչ կատարվում էր Բուդապեշտում...
Մենք լսում էինք նաև «Ազատ Եվրոպա» ռա-
դիոկայանի հաղորդումները, որոնց ծրագի-
րը, տոնը և խռովության կոչերը մեծ չարիք
հասցրին։ Շատ հունգարացիներ մեզ ասում
էին, որ այդ ռադիոհաղորդումները մեծ ար-
յունահեղություն էին առաջացնում»։

Խռովության ժամանակ «Ազատ Եվրոպա» ռադիոկայանը պատրաստում էր հրահրիչ թռուցիկներ, բրոշյուրներ, «ապստամբների հուշատետրեր»։ Այդ պրովոկացիոն նյութերը կազմելու համար ստեղծվել էր հատուկ խումբ, որի տնօրինության տակ կային երկու տպարան։

Արևմտյան երկրների ռեակցիոն իմպերիալիստական շրջանները իրենց մերկացրին որպես հակաժողովրդական արյունոտ խռովություն բարձրացրած հունգարական



ֆաշիստների ոգեշնչողներ և գործակիցներ։ Այժմ նրանք, հենվելով իրենց սանձարձակ պրոպագանդիստական մեքենայի վրա և օգտագործելով ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի ամբիոնը, փորձում են Սովետական Միության, ժողովրդա-դեմոկրատական երկրների և միջազգային կոմունիստական շարժման մասին ստի և զրպարտության պղտոր հոսանքում խեղդել ճշմարտությունը հունգարական դեպքերի մասին։

Բայց ուժը ճշմարտության մեջ է։ Նոր պատերազմ տենչացող միջազգային պրովոկատորներին չի հաջողվի խաբել ժողովուրդներին։ Ֆաշիստական ավանտյուրայի ջախջախումը Հունգարիայում ուժեղ հարված հասցրեց իմպերիալիստական դավադիրներին։

Հունգար ժողովուրդը, հենվելով Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների աջակցության վրա, կասեցրեց գազանացած հակառևոլյուցիայի գրոհը և այժմ, հաղթահարելով բոլոր դժվարությունները, ամրապնդում է ժողովրդա-դեմոկրատական կարգը, որպեսզի առաջ ընթանա սոցիալիզմի կառուցման ուղիով։

---

## ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԸ

# ՄԱՈ ՑԶԵ-ԴՈՒՆ

Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի Նախագահ, Չինաստանի կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Քաղբյուրոյի նախագահ ընկեր Մաո Ցզե-դունը ծնվել է 1893 թվականի դեկտեմբերի 26-ին, գյուղացու ընտանիքում, Սյանտայի գավառի (Խունանի նահանգ) Շաո շան գյուղում։

Պատանեկական տարիներից Մաո Ցզե-դունը մասնակցում է ռևոլյուցիոն շարժմանը։ 1911 թվականին նա զինվորագրվում է Ջանշա քաղաքում գործող ռևոլյուցիոն զոկատին, 1913—1918 թվականներին սովորում է Խունանի առաջին մանկավարժական ուսումնարանում (Ջանշա քաղաքում)։ Այդ ուսումնարանն ավարտելուց հետո Մաո Ցզե-դունը գնում է Պեկին և աշխատանքի անցնում համալսարանի գրադարանում։ Այստեղ նա ծանոթանում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, որոնք Չինաստանում սկսել էին տարածվել Հոկտեմբերյան



Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո։ 1920 թվականին Մաո Ցզե-դունը վերադառնում է Ջանշա և աշխատանքի անցնում մանկավարժական ուսումնարանում, որպես դասատու։ Հենց այստեղ էլ նա գըլխավորում է իր հիմնադրած մարքսիզմի ուսումնասիրության ընկերությունը և Երիտասարդության սոցիալիստական միությունը։

Մաո Ցզե-դունը Չինաստանի կոմունիստական պարտիայի հիմնադիրներից մեկն է և մասնակցել է Չինաստանի Կոմպարտիայի առաջին համագումարին, որը տեղի ունեցավ 1921 թվական հուլիսին, Շանհայում։ Համագումարից հետո նա աշխատում է որպես ՉԿՊ-ի Խունանի կոմիտեի քարտուղար (1921—1923 թվականներին), Խունանի պրոֆեսիոնալ միությունների ֆեդերացիայի նախագահ (1922 թվականին)։ Չինաստանի Կոմունիստական պարտիայի 3-րդ համագումարում (1923 թվականի հունիսին) Մաո Ցզե-դունը ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի անդամ և դառնում Կենտկոմի կազմակերպական բաժնի վարիչ։

Մաո Ցզե-դունը 1924—1927 թվականների ռևոլյուցիայի ակտիվ մասնակից է, 1924 թվականին նա գլխավորում է Խունանի նահանգի գյուղացիական շարժումը, 1925

թվականին ղեկավարում է գյուղացիական
շարժման դասընթացները Կանտոնում և
խմբագրում «Ջժենչժի չժոուբաո» («Քաղա-
քական շաբաթաթերթ») ժուռնալը։ 1926 թվա-
կանին Մաո Ցզե-դունը գլխավորում է ՉԿՊ
Կենտկոմի՝ գյուղացիական շարժման հանձ-
նաժողովը (Շանհայում), 1927 թվականին
դառնում է Համաչինական գյուղացիական
միության նախագահ (Ուխանում)։ Մաո Ցզե-
դունը ակտիվ պայքար է մղում աջ կապի-
տուլյանտների և «ձախ» ուկլոնիստների դեմ։
1924—1927 թվականների ռևոլյուցիայի
ժամանակավոր պարտությունից հետո 1927
թվականի սեպտեմբերին Մաո Ցզե-դունը
Ցզյանսի և Խունան նահանգներում կազմա-
կերպում է գյուղացիական՝ «Աշնանային
բերքի» ապստամբությունը։ 1928 թվակա-
նին, Ցզինգանշանի շրջանում, ապստամբնե-
րը միանում են Չժու Դեի զորքերին և կազ-
մակերպում կարմիր բանակի 4-րդ կորպու-
սը։ Մաո Ցզե-դունը նշանակվում է կորպու-
սի կոմիսար։ Նրա ղեկավարությամբ Հարա-
վային Չինաստանի տերիտորիայում ստեղծ-
վում են կարմիր բանակի հենակետային
ռևոլյուցիոն բազաներ և միավորումներ։
Բանվորական և գյուղացիական դեպուտատ-



ների Համաչինական առաջին համագումա-
րում, որը տեղի ունեցավ 1931 թվականի
նոյեմբերին, Մաո Ցզե-դունը ընտրվում է
Չինաստանի բանվորա-գյուղացիական դե-
մոկրատական կենտրոնական կառավարու-
թյան Գործկոմի նախագահ։ 1933 թվականի
հունվարից Մաո Ցզե-դունը ՉԿՊ Կենտկոմի
Քաղբյուրոյի անդամ է։
Այն ժամանակ պարտիայի մեջ ղեկավար
աշխատանքի անցած «ձախ» ուկլոնիստների
վարած սխալ գծի հետևանքով, 1934 թվա-
կանին կարմիր բանակին չհաջողվեց ետ
մղել չանկայշիական զորքերի հարձակումը։
Նա ստիպված եղավ դիմել մի խոշոր ստրա-
տեգիական վերաբաշխման, որը հայտնի
է որպես Մեծ արշավանք դեպի Հյուսիս-
Արևմուտք։ 1935 թվականի հունվարին ՉԿՊ
Կենտկոմի Քաղբյուրոյի ընդլայնված նիս-
տում «ձախ» ուկլոնիստները հեռացվեցին
ղեկավար աշխատանքից և ստեղծվեց պար-
տիայի նոր ղեկավարություն՝ Մաո Ցզե-դու-
նի գլխավորությամբ, որն ընտրվեց Կենտ-
կոմի քարտուղար։ Հենց նույն թվականին էլ
նա ընտրվում է ՉԿՊ Կենտկոմին կից Ռազմա-
ռևոլյուցիոն խորհրդի նախագահ։
Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ Չինաս-
տանի կոմունիստական պարտիան գլխավո-

րում է չին ժողովրդի ազգային-ազատագրական պատերազմը յապոնական իմպերիալիստների դեմ (1937—1945 թվականներ) և ազգային-ազատագրական պայքարը չանկայշիական ռեակցիոն կլիկի ու օտարերկրյա իմպերիալիզմի դեմ։ 1943 թվականին Մաո Ցզե-դունը ընտրվում է ՉԿՊ Կենտկոմի Քաղբյուրոյի նախագահ։

1949 թվականին չին ժողովուրդը պատմական հաղթանակ տարավ, որի շնորհիվ երկիրը հռչակվեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա։ Մաո Ցզե-դունը ընտրվում է ՉԺՌ-ի Կենտրոնական ժողովրդական կառավարության նախագահ և նշանակվում ժողովրդա-ռևոլյուցիոն ռազմական խորհրդի նախագահ։ 1954 թվականի սեպտեմբերից Մաո Ցզե-դունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նախագահ է և Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ։

---



# XVI ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ

## (Թվեր և փաստեր)

1956 թվականի նոյեմբերի 22-ից մինչև դեկտեմբերի 8-ը Մելբուռն քաղաքում (Ավստրալիա) տեղի ունեցան 16-րդ օլիմպիական խաղերը։ Ավելի քան երկու շաբաթ աշխարհի 68 երկրների 5.440 սպորտսմեններ սպորտի 20 ձևերից մրցում էին օլիմպիական չեմպիոնի պատվավոր կոչման արժանանալու համար։

Այդ խաղերի ընթացքում սովետական սպորտսմենները ցույց տվեցին սպորտային բարձր վարպետություն և հասան փայլուն հաջողությունների։ Ստորև բերում ենք մի շարք թվեր ու փաստեր 16-րդ օլիմպիական խաղերի մասին։

✪ Սովետական Միությունը այս էլ երկրորդ անգամն է, որ մասնակցում է համաշխարհային օլիմպիական խաղերին։ Առաջին անգամ այդ խաղերին նա մասնակցեց 1952 թվականին (15-րդ օլիմպիական խաղեր) և ընդհանուր ցուցանիշներով գրավեց 2-րդ տեղը, ապացուցելով, որ սովետական սպորտսմենները օլիմպիական խաղերում առաջնության ուժեղ հավակնորդներ են։

Իսկ 1956 թվականի օլիմպիական խաղերի ընթացքում

սովետական սպորտսմենները հավաքեցին 622 միա-
վոր և գրավեցին առաջին տեղը: Սովետական սպորտ-
սմենները նվաճեցին 98 մեդալ, որից 37 ոսկի, 29 ար-
ծաթե և 32 բրոնզե:

✪ Երկրորդ տեղը գրավեց Ամերիկայի Միացյալ Նահանգների ուժեղագույն սպորտային պատվիրակությունը, որը հավաքեց 497 միավոր: Մեդալների քանակով ևս նա զիջեց ՍՍՌՄ-ի պատվիրակությանը: Ամերիկյան սպորտսմենները նվաճեցին 74 մեդալ, որից 32 ոսկի, 25 արծաթե և 17 բրոնզե:

✪ Սովետական սպորտային թիմերը առաջին տեղեր գրավեցին մարմնամարզությունից, բռնցքամարտից, ժամանակակից հնգամրցումից, գնդակային հրաձգությունից, կանոեի և բայդարկայի թիավարությունից: Իսկ թեթև ատլետիկայից, բասկետբոլից, ազատ ըմբշամարտից, ծանր ատլետիկայից, ակադեմիական թիավարությունից նրանք գրավեցին երկրորդ տեղը:

✪ Թեթև ատլետիկայի գծով սովետական սպորտսմենները հավաքեցին 144 միավոր: Այդ մրցումների ընթացքում առանձնապես աչքի ընկան Վլադիմիր Կուցը՝ 5 հազար և 10 հազար մետր վազքում և Ի. Նովիկովը (Երևան), Ի. Դերյուգինը, Ա. Տարասովը, Ա. Միկենասը՝ ժամանակակից հնգամրցում ձևում: Նրանք գրավեցին առաջին տեղը և արժանացան օլիմպիական ոսկե մեդալի:

✪ Մարմնամարզության գծով թիմային առաջնության հասան սովետական սպորտսմենները: Խաղերի



չեմպիոններ դարձան Լ. Լատինինան, Վ. Չուկարինը, Ա. Ազարյանը, Վ. Մուրատովը, Բ. Շախլինը և ուրիշներ: Ընդհանուր թվով սովետական մարմնամարզիկները նվաճեցին 11 ոսկի, 6 արծաթե և 6 բրոնզե մեդալներ:

✪ Օլիմպիական խաղերը ցույց տվեցին, որ սովետական բռնցքամարտիկները ուժեղագույնն են աշխարհում: Նրանցից Վ. Ենգիբարյանը, Վ. Սաֆրոնովը և Գ. Շատկովը ստացան ոսկե մեդալներ: Սովետական բռնցքամարտիկները ձեռք բերեցին 33 միավոր, Անգլիայինը՝ 26 միավոր, Ռումինիայինը՝ 20,5 և ԱՄՆ-ինը՝ 19 միավոր:

✪ Ազատ ըմբշամարտի գծով սովետական սպորտսմենները աչքի ընկնող հաջողությունների չհասան: Բայց դրա փոխարեն կլասիկ ըմբշամարտի գծով նրանք նվաճեցին 5 առաջին, 1 երկրորդ և 1 երրորդ տեղեր: Ոսկե մեդալների արժանացան ըմբշամարտիկներ՝ Ն. Սոլովյովը, Կ. Վիրուպաևը, Գ. Կարտոզիան, Վ. Նիկոլաևը և Ա. Պարֆենովը:

✪ Ծանրության բարձրացման գծով առաջին տեղը գրավեցին ԱՄՆ-ի սպորտսմենները (ԱՄՆ— 42 միավոր, ՍՍՌՄ—41): Ծանր քաշում օլիմպիական չեմպիոնի հավակնորդներ էին ամերիկացի Պ. Անդերսոնը և արգենտինացի Ու. Սելվետտին: Եռամրցման ժամանակ այս երկուսն էլ ցույց տվեցին 500-ական կիլոգրամ: Բայց քանի որ Պ. Անդերսոնին հաջողվել էր իր քաշը 165 կիլոգրամից իջեցնել 137,9 կիլոգրամի, իսկ

արգենտինացին մրցումների պահին կշռում էր 143,5 կիլոգրամ, հաղթանակը շնորհվեց Անդերսոնին, որը և դարձավ օլիմպիական չեմպիոն և նվաճեց ոսկե մեդալ։ Սելվետտին ստիպված էր բավարարվել արծաթե մեդալով։

✪ Սովետական հրաձիգներ՝ Վ. Ռոմանենկոն, Վ. Բորիսովը և Ա. Բողդանովը դարձան օլիմպիական չեմպիոններ։ Սովետական թիմը ձեռք բերեց 3 առաջին, 4 երկրորդ և 1 երրորդ տեղեր և հավաքեց 50 միավոր, որը մոտ երկու անգամ ավել է, քան 1952 թվականի օլիմպիական խաղերի արդյունքը։

✪ Ֆուտբոլի սովետական թիմը դարձավ օլիմպիական խաղերի չեմպիոն։ Մինչև ֆինալ դուրս գալը, սովետական ֆուտբոլիստները հաղթեցին Գերմանիայի (միացյալ) թիմին (2:1), Ինդոնեզիայի թիմին (4:2), Բուլղարիայի թիմին (2:1)։ Ֆինալային մրցումներում ՍՍՌՄ-ի ֆուտբոլիստները հանդիպեցին Հարավսլավիայի թիմի հետ։ Խաղն ավարտվեց 1:0 հաշվով հօգուտ սովետական ֆուտբոլային թիմի։ Նախորդ օլիմպիական խաղերի չեմպիոն՝ հունգարական թիմը դեռ մի քանի ամիս առաջ հայտարարել էր, որ անբավարար պատրաստվելու պատճառով այս խաղերին չի մասնակցելու։

✪ Օլիմպիադայում անցկացվող սպորտի բոլոր 20 ձևերից մրցումներին լրիվ մասնակցում էր միայն Ավստրալիան։ ՍՍՌՄ-ը և ԱՄՆ-ը մասնակցում էին միայն 19 ձևերից, Մեծ Բրիտանիան և Գերմանիան՝



18, Ֆրանսիան և Ճապոնիան՝ 17 ձևերից և այլն։ Սպորտի միայն 1 ձևից մասնակցում էին 9 երկրներ։

✪ Սպորտսմեններին կերակրելու համար ստացվել էր 300 արկղ կոնսերվացված տոմատ, 7 տոննա սիսեռ, 5 տոննա ոլոռ, 15 տոննա ձուկ, 2 տոննա կենգուրուի միս։ Ամեն շաբաթ օլիմպիական բնակավայր էր բերվում 10 տոննա կարտոֆիլ։ Սպորտսմեններին սպասարկում էին 180 որակյալ խոհարարներ, որոնք 5 ազգային խոհանոցներում բազմատեսակ ճաշեր էին պատրաստում։

✪ Սպորտային պատվիրակությունները տեղավորված էին Մելբուռնի մերձքաղաքային Հայդելբերգ ավանում։ Այդտեղ նրանց համար կարճ ժամանակամիջոցում կառուցվել էր 840 հարմարավետ կոտտեջներ։

✪ Հետաքրքիր է օլիմպիական կրակ վառելու արարողությունը, որը տեղի ունեցավ Նոյեմբերի 2-ին։ Օլիմպոս լեռան վրա (Հունաստան) գտնվող Զևսի տաճարի ավերակների մոտ մի խումբ հույն աղջիկներ, որոնք հագել էին սպիտակ զգեստներ, մեծ խոշորացույցի միջոցով արևի ճառագայթներից վառեցին օլիմպիական կրակը։ Ապա Աթենքի տաճարի քրմուհին Յուպիտերից խնդրեց թույլ տալ կրակը տանել։ Կրակի «հանկարծակի» բռնկումից աղջիկները «իմացան», որ «Յուպիտերը համաձայն է»։ Այդ ժամանակ կրակը հանձնվեց 340 հույն վազորդներին, որոնք այն հասցրին Աթենքի Ակրոպոլ։ Այստեղից կրակը «Կանբերրա» ռեակտիվ ռմբակոծիչով փոխադրվեց Ավստրալիա։

# ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՀԱՇՎԻՉ ՄԵՔԵՆԱՆԵՐ

Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու,
դոցենտ

Արտադրության ավտոմատիզացիան մեր երկրի ժողո-
վրդական տնտեսության բոլոր բնագավառների արագ
զարգացման հիմնական նախապայմաններից մեկն է։
Սովետական Միության Կոմունիստական պարտիայի
XX համագումարի Դիրեկտիվներում հատուկ ուշադրու-
թյուն է դարձվում վեցերորդ հնգամյակում մաթեմա-
տիկական մեքենաշինության լայն զարգացման վրա։
Նախատեսված է, որ հնգամյակի ընթացքում հաշվիչ-
անալիտիկ մեքենաների արտադրությունը կաճի 4,5
անգամ և կուժեղացվեն արագ գործող հաշվիչ մեքե-
նաների նախագծման ու պատրաստման աշխատանք-
ները, որոնք անհրաժեշտ են մաթեմատիկական բարդ
խնդիրների լուծման և արտադրության պրոցեսների
ավտոմատ կերպով ղեկավարելու համար։

Ժամանակակից ունիվերսալ էլեկտրոնային հաշվիչ
մեքենան մեկ վայրկյանում կատարում է մեծ քանա-
կությամբ թվաբանական գործողություններ և փոխա-
րինում է հաշվումներ կատարող մի քանի տասնյակ



հազար մարդկանց։ Մի քանի ժամվա ընթացքում մե-
քենայով կատարվում է այնքան հաշվում, ինչքան որ
չի կարող կատարել լավ փորձված հաշվողը իր ամբողջ
կյանքում։ Օրինակ, նման մեքենան թռչող արկի հետա-
գիծն ավելի արագ է հաշվում, քան արկի թռիչքի ժա-
մանակի տևողությունն է։ Հաշվումների արագությունը
նպաստում է հաջորդ օրվա եղանակի հուսալի նախա-
գուշակմանը։ Նույն հաշվումները ձեռքով կատարելու
դեպքում, որը կտևեր մի քանի օր, ստացված տվյալ-
ները կկորցնեին իրենց պրակտիկ նշանակությունը։

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների հաշվման այս-
պիսի մեծ արագությունը, պայմանավորված է նրանց
հիմնական էլեմենտներ հանդիսացող էլեկտրոնային
լամպերի (ռադիոլամպերի) օգտագործմամբ, որոնցում
էլեկտրական հաշվիչ ազդանշանների տևողությունը
հասնում է մինչև 100-րդական միկրովայրկյանի։ Նման
մեքենան իրենից ներկայացնում է մի քանի հազար
էլեկտրոնային լամպերի հանրագումար և զբաղեցնում
է մոտ 30—40 քառակուսի մետր տարածություն։

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն օժտված են նաև
զարմանալի մի այլ հատկությամբ։ Նրանք կարող են
կատարել տրամաբանական գործողություններ, այն է՝
կարող են չափազանց մեծ հաջողությամբ շախմատ,
դոմինո և այլ խաղեր խաղալ ու տանել ամենալավ
խաղացողին։ Նրանց օգնությամբ հնարավոր է լուծել
բազմաթիվ անհայտներով հանրահաշվական հավասա-
րումներ, բարձրագույն մաթեմատիկայից բազմաթիվ

բարդ խնդիրներ։ Նրանք լայն կիրառություն են ստանում հիդրոտեխնիկական, էլեկտրոմոտորների, ինքնաթիռների, մետաղե կոնստրուկցիաներով կամուրջների, տուրբինների շինարարության գործում։ Այդ մեքենաները կարող են բավական հաջող կերպով թարգմանել մեկ լեզվով գրած տեքստը մի այլ լեզվի։

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնությամբ հաշվման այդպիսի մեծ արագությունը և բազմատեսակ գործողությունների կատարման ընդունակությունը խնայում է մարդու ժամանակը և նպաստում է մարդու ստեղծագործական աշխատանքի արագ թափին։

Մեքենան կարող է գործել միայն մարդու կողմից նախապես կազմված ծրագրով, այդ պատճառով էլ նա զրկված է ինքնուրույն ստեղծագործելու (մտածելու) հնարավորությունից։ Իհարկե նա չի կարող փոխարինել մարդուն, թեև բազմաթիվ գործողություններ նա կարող է կատարել սովորական մարդուց ավելի ճըշգրիտ, անհամեմատ արագ և մեծ ճշտապահությամբ։ Նման մեքենայի օգտագործումը հսկայական չափով մեծացնում է մարդու հնարավորությունները։ Այդ է պատճառը, որ նրանք լայն կիրառություն են ստանում գիտահետազոտական ինստիտուտներում, կոնստրուկտորական բյուրոներում, նախագծային կազմակերպություններում, արդյունաբերության ու գյուղատնտեսության բարդ խնդիրների արագ լուծման գործում։

Սովետական ինժեներների, էլեկտրոնիկների ու մաթեմատիկոսների առաջ լայն հեռանկարներ են բացված



հաշվիչ մեքենաների աշխատանքի սկզբունքների հետագա կատարելագործման և նրանց օգտակար շահագործման բնագավառում։

Նման մեքենայի օրինակ է ծառայում ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի հաշվողական տեխնիկայի և ճշգրիտ մեխանիկայի ինստիտուտի կողմից ստեղծված արագ գործողության էլեկտրոնային հաշվիչ մեքենան (ГЭСМ)։

Այդ մեքենան միջին հաշվով մեկ վայրկյանում կատարում է 7—8 հազար հաշվում, փոխարինելով մի քանի տասնյակ հազար հաշվողների։ 800 հավասարումներով կազմված խնդիրը, որի լուծման համար առաջ պահանջվում էր կատարել 250 միլիոն թվաբանական գործողություններ, մեքենան լուծում է 10 ժամում։ Նրանով 3 ժամում լուծել են հիդրոտեխնիկական շինարարության համար կարևոր նշանակություն ունեցող մի խնդիր, այն էլ մի քանի վարիանտով, այն դեպքում, երբ թվով 15 հաշվողներ այդ խնդրի միայն մի վարիանտով լուծելու համար կկորցնեին մի քանի ամիս։ Այս մեքենայով կատարվել է անգլերենից ռուսերեն թարգմանության առաջին փորձը։ Միջազգային աստղագիտական օրացույցի համար մի քանի օրվա ընթացքում այդ մեքենան հաշվել է արեգակնային համակարգության մոտ յոթ հարյուր մեծ և փոքր մոլորակների շարժման հետագծերը։ Այդպիսով նախապես, տաս տարի առաջ, արդեն հաշվել է նրանց կոորդինատները և այն, թե յուրաքանչյուր քառասուն օրից

հետո մոլորակները տիեզերքում որտեղ են գտնվելու։
Սրա շնորհիվ երկիրն արդեն ստացել է հարյուր միլիոն
ռուբլու հասնող տնտեսում։
Ցանկացած բնույթի խնդրի լուծումը մեքենան կա-
տարում է թվաբանական չորս գործողությունների օգ-
նությամբ։
Հաշվիչ մեքենան կազմված է հետևյալ հանգույցա-
յին ագրեգատներից.
1. Թվաբանական ագրեգատից, որտեղ իրականաց-
վում է թվաբանական բոլոր չորս գործողությունների
կատարումը։
2. Օպերատիվ հիշողության ագրեգատից, որում պահ-
վում ու հիշվում է հաշվման համար նախապես կազմ-
ված ծրագիրը, միջանկյալ արդյունքները և սկզբնական
տվյալները։
3. Մագնիսական հիշողության ագրեգատից, որը
կազմված է մագնիսական գլանից, որի վրա կարելի է
գրանցել ու պահել հինգ հազար թիվ, և մագնիսական
ժապավենից, որի վրա գրանցվում է 120 հազար թիվ։
4. Ղեկավարման ագրեգատից, որը ապահովում է
ինչպես առանձին հանգույցների համաձայնեցված աշ-
խատանքը, այնպես էլ մեքենայի գործողություններն
ամբողջությամբ վերցված։
5. Ղեկավարման սեղանից, որի օգնությամբ իրա-
կանացվում է մեքենայի աշխատեցման և կանգնեց-
ման, ինչպես նաև կոնտրոլի ենթարկման գործողու-
թյունը։



6. Մուտքի ագրեգատից, որը կոչված է կազմված
ծրագիրն ու սկզբնական տվյալները մեքենա մտցնե-
լու համար։
7. Տպագրման ագրեգատից, որը կոչված է հաշվում-
ներից ստացված արդյունքները տպագրելու համար։
Որևէ խնդիր լուծելու համար նախ մարդու միջոցով
կազմվում է այդ խնդրի լուծման ծրագիրը, այսինքն՝
թվաբանական գործողությունների կատարման հաջոր-
դականության կարգը։ Որպեսզի խուսափել մեծ բազ-
մությամբ թվերի հետ գործ ունենալուց և հնարավորու-
թյուն ունենալ էլեկտրական ազդանշաններով գրանցե-
լու կամ հաղորդելու այս կամ այն թիվը, մեքենայում
գործողությունները կատարվում են ոչ թե թվարկու-
թյան տասնորդական սիստեմով, այլ թվարկության
երկնիշ սիստեմով, այսինքն՝ ցանկացած թիվը կարելի
է գրել միայն երկու՝ «0» և «1» թվանշանով, որտեղ «0»
թվանշանը համապատասխանում է էլեկտրական ազ-
դանշանի բացակայությանը, իսկ «1» թվանշանը այդ
ազդանշանի առկայությանը։ Թվաբանական որևէ խըն-
դիր լուծելու համար նախ խնդիրը ծրագրվում է։ Ծրա-
գիրը բաղկացած է գործողություններ կատարելու հա-
մար միմյանց հաջորդող հրամաններից։ Իր հերթին
յուրաքանչյուր հրաման բաղկացած է գործողություն-
ներից և հասցեներից, որոնք պարտավոր է կատարել
մեքենան։ Թվաբանական գործողությունների ծրագիրը
կազմելուց հետո այն հատուկ բլանկի տեսքով ուղարկ-
վում է մեքենայական բյուրո, որտեղ հատուկ հարմա-

րանքներով թղթյա ժապավենի վրա արվում են այդ բլանկի վրա եղած գրությանը համապատասխանող անցքեր (նման կինոժապավենի եզրերում եղած անցքերին)։ Ծրագիրը կրող այդ անցքավոր թղթյա ժապավենը անցնում է ֆոտոէլեմենտի և լույսի աղբյուրի արանքով։ Յուրաքանչյուր անցքով անցած լույսն ընկնելով ֆոտոէլեմենտի վրա, թվեր պարունակող հրամանները և հասցեները վեր են ածվում միմյանց հաջորդող էլեկտրական ազդանշանների։

Ամենապարզագույն դեպքում ենթադրենք, որ ըստ ծրագրի, պետք է կատարվի երկու թվերի գումարման գործողություն, այդ նպատակով թվաբանական ագրեգատն օպերատիվ հիշողության ագրեգատից հերթականությամբ պահանջում է առաջին, ապա երկրորդ թիվը, և ծրագրի հաջորդ հրամանի համաձայն պահանջվում է կատարել գումարման գործողություն։ Այս հրամանը կատարում է մի այլ հարմարանք, որը կոչվում է «Սումատոր» (գումարիչ), որի գործողությունից ստացված թիվն ուղարկվում է օպերատիվ հիշողության ագրեգատը, մի այլ անգամ պիտանի լինելու համար և միաժամանակ ուղարկվում է տպագրության ագրեգատ։

Ծրագրի հաջորդ հրամանը կարգադրում է տպագրել այդ թիվը։ Այս օպերացիայում հատուկ հարմարանքի օգնությամբ թվարկության երկնիշ սիստեմով արտահայտված այս թիվը ձևափոխվում է թվարկության տասնորդական սիստեմի և գրանցվում է թղթյա հա-



տուկ ժապավենի վրա սովորական թվերի տեսքով։

Մեքենայի հնարավորությունները մեծացնելու նպատակով ստացված արդյունքները տպագրում են մագնիսական ժապավենի վրա, որի վրա կարելի է գրանցել մինչև 120 հազար թիվ, իսկ գրանցման արագությունը մեկ վայրկյանում հասնում է 400 թվի։ Այս կատարվում է մագնիտոֆոնի օգնությամբ։ БЭСМ մեքենան օժտված է նման չորս մագնիտաֆոններով։ Մագնիսական ժապավենն օգնում է մեքենային այն բանում, որ արդյունքներն այդ ժապավենի վրա գրանցելու ժամանակ կարող է լուծել մի այլ խնդիր առանց ընդմիջման։ Մեքենայի աշխատանքը կոնտրոլի է ենթարկվում կենտրոնական ղեկավարման սեղանից։

Հաշվիչ մեքենան ունի մոտ 5.000 էլեկտրոնային լամպ։ Նույնիսկ մեկ լամպի շարքից դուրս գալը հաշվման մեջ սխալ է մտցնում, այդ պատճառով էլ անհրաժեշտ է լինում մեքենան պահել կոնտրոլի տակ։ Մեքենայի հուսալի աշխատանքի ապահովման համար սիստեմատիկաբար կատարվում է մեքենայի պրոֆիլակտիկական կոնտրոլ։ Ստացված արդյունքներն ավտոմատ կերպով համեմատվում են պահանջված պատասխանի հետ, և տարբերության դեպքում մեքենան ավտոմատ կերպով կանգնում է։ БЭСМ մեքենայով (որը հատկապես չի նախատեսված թարգմանության համար) կատարվում է անգլերենից ռուսերենի փորձնական թարգմանություն։ Այս դեպքում մեքենան մի լեզվով տեքստի բառերը համեմատում է նախօրոք իրեն հա-





ղորդած բառարանի հետ ու գտնում է՝ պահանջվող բառը, որը և տպագրվում է տպագրիչ ագրեգատի վրա։ Շատ հաջող թարգմանության համար անհրաժեշտ է կազմել շատ մանրակրկիտ ծրագիր։ Այս մեքենայով շախմատ խաղալու համար յուրաքանչյուր ֆիգուրան գնահատում են բալերով։ Օրինակ՝ թագավորը՝ 10 հազար բալ, թագուհին՝ 100 բալ, նավակը՝ 50 բալ և այլն։ Բացի այդ դիրքային որոշ ֆակտորներ, օրինակ բաց գիծը, կրկնակի զինվորը, նույնպես գնահատվում է համապատասխան բալերով։ Մեքենան մի շարք փորձերից հետո մեծ արագությամբ հակառակորդին պատասխանում է հնարավոր ամենաճիշտ քայլով։

Լայն կիրառում են ստացել բյուրեղային կիսահաղորդիչ էլեմենտները, որոնք արդեն հաջող կերպով փոխարինում են էլեկտրոնային լամպերին և իրենց չափազանց փոքրիկ չափսերով այնքան են փոքրացնում ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենայի չափսերը, որ այն հնարավոր է լինում տեղավորել ռեակտիվ հրթիռի ծայրին, վերջինիս թռիչքն առանց մարդու միջնորդության ինքնաղեկավարման համար։ Այս տիպի մեքենաների մասսայական արտադրությունը արտակարգ կերպով կնպաստի նոր հնգամյա պլանի հաջող կենսագործման համար։

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**

# БЛОКНОТ АГИТАТОРА

**№ 1** **1957 г.**

ՎՖ 00620 Պատվեր 33 Տիրաժ 8250

---

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։